## «Ես նապաստակ չեմ» կը պոռայ Վիշինսքի Միացեալ Ազգերու ժողովին մէջ

Միացեալ Ազգերու քաղաքական յանձնախումբը հինգշաբթի օր 6ի դէմ 43 ձայնով որոշեց որ 57 ազգերու կազմակերպութիւնը չարունակէ իր նիստերը ամբողջ տարին՝ օրակարգի երկրորդական նիւթերը սպառելու համար։ Խորհրդային Միութեան գլխաւոր պատուիրակը յայտարարեց անմիջապէս որ իր կառավարութիւնը պիտի չմասնակցի այդ «պզտիկ համաժողովին»։ Անգլիոյ պատուիրակը Սըր Հարթլի Շօքրոս, ըսաւ որ «Ռուսիա կ'աշխատի իր կամքը պարտադրել ուրիշներուն վրայ» եւ կոչ ըրաւ որ Խորհրդային Միութիւնը փարատէ իր մասին եղած կասկածները։ Սըր Հարթլի հերքեց այն ամբաստանութիւնը թէ օժանդակ համաժողովին նպատակն է չէզոքացնել Ապահովութեան Խորհուրդը եւ դիտել տուաւ որ Ռուսիա վեթոյի իր իրաւունքը գործադրելով կ'ուզէ ճնշում բանեցնել։ Վիշինսքի պատասխանեց հետեւեալ բառերով.— Արեւմտեան պետութիւնները կ'ուզեն Ռուսիան վտարել Միացեալ Ազգերու կազմակերպութենէն, դուք կ'ուզէք բռնաբարել Միջազգային Ուխտը եւ յետոյ կը հարցնէք թէ ինչու չենք գործակցիր։ Երեւի դուք կ'ուզէք՝ մեզ այնպէս մը դրկել որ խեղդամահ ըլլանք ճիշդ այնպէս ինչպէս թունաւոր օձն կը դիւթէ նապաստակը»։ Վիշինսքի խօսքը ուղղելով Անգլիոյ ներկայացուցիչին, պոռաց — Ես նապաստակ չեմ իսկ դուք,, Սըր Հարթլի, չունիք օձին մագնիսականութիւնը» ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԱՐԷՆԱՒՈՐՈՒՄ.— Պանան՝ Նոյեմբեր 7էն 30 E. J. A. դասակարգերուն 800 կրամ՝ SJ կտրոնով։ Շաքար՝ Նոյեմբեր 10էն 30 E դասակարգին 1ուկէս քիլօ, J եւ A դասակարգերուն մէկ քիլօ, M եւ V դասակարգերուն 750 կրամ՝ 66 եւ 72 թիւ կտրօններով ։

ԵԳԻՊՏՈՍԻ համաճարակէն հինգշաբթի օր մեռած են 170 հոգի, վարակուած են 398 անձեր ։ Ֆրանսական իշխանութիւնները կը չարունակեն հակաժահրիչներ ուղարկել Եգիպտոսի համար օդով։ Եգիպտոսի օդանաւային սպասարկութիւնը ընդհատուած է ցնոր տնօրինութեան ։

ՌՈՒՍԱԿԱՆ յեղափոխութեան 30րդ տարեդարձին առթիւ մեծաշուք հանդէսներ տեղի կ'ունենան Մոսկուայի մէջ երեք օրէ ի վեր։ Ուրբաթ օր զինուորական տողանցք մը կատարուեցաւ Մոսկուայի կարմիր հրապարակին վրայ։ Արեւելեան Եւրոպայի բոլոր երկիրները — բացի Յունաստանէն — մասնաւոր պատուիրակութիւններ ղրկած էին հանդէսներուն մասնակցելու համար ։ Մայրաքաղաքը դրօշազարդուած էր եւ լուսաւորուած։ Լենինի եւ Ստալինի ինչպէս նաեւ քաղաքական բիւրոյի բոլոր անդամներուն լուսանկարները ցուցադրուած են հրապարակներու վրայ ։

ՌՈՒՄԱՆԻՈՅ արտաքին նախարարը Թաթարէսքու հրաժարեցաւ երբ խորհրդարանը 5ի դէմ 187 քուէով ամբաստանեց զինքը դաւադրութեան մասնակցած ըլլալու յանցանքով։ Իրմէ անմիջապէս ետք, հրաժարեցան նաեւ երեք նախարարներ՝ անդամ ազատական կուսակցութեան։ Համայնավար վարչապետ Կրոզա բացառիկ նիստի հրաւիրած իր դահլիճին մնացեալ անդամները՝ կառավարութեան կազմը ամբողջացնելու համար։

ՄԱՀԱՓՈՐՁ մը կատարուեցաւ հինգշաբթի օր Պիրմանիոյ վարչապետ Թաքին Նուի վրայ։ Ինք չվիրաւորուեցաւ բայց սպաննուեցաւ իր անգլիացի թիկնապահը։ Ոճիրին հեղինակը անյայտացած է։ Արտաքին նախարարը Եու Թին Թութ կծու բառեր արտասանեց Չըրչիլի հասցէին որ, ինչպէս յայտնի է, դէմ է Պիրմանիոյ անկախութեան ծրագրին եւ անցեալներս խստօրէն կը քննադատէր նախորդ վարչապետը (սպաննուած յուլիսին)։ Ամէնէն թեթեւ խօսքը զոր կրնամ ըսել Չըրչիլի մասին այն է թէ այդ մարդը հաւանաբար մոռցած է իր ծագումը եւ ստացած դաստիարակութիւնը, ըսաւ վարչապետը։ Իր յաճախած դպրոցներուն մէջ սորված պիտի ըլլար որ ազնիւ մարդը չի հայհոյեր մեռնողներուն ետեւէն ։

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ համայնագիտարանը որ 21 տարիէ ի վեր պատրաստութեան մէջ էր պիտի աւարտի քանի մը շաբաթէն։ Կը բաղկանայ աւելի քան 70 հատորներէ ։



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի։ Այսօր կէսօրէ վերջ ժամը 3էն 11 Սալ Կալմանի մէջ։

Պիտի խօսին ընկերներ ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ եւ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ (ֆրանսերէն)։

Խնջոյք – պարահանդէս ։ Գեղարուեստական ճոխ յայտագրով։ «Սամուէլ»էն պիտի ներկայացուին կենդանի պատկերներ։ Պիտի ըլլան երգ, նուագ եւ արտասանութիւններ։

★

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

22 Նոյեմբեր, շաբաթ իրիկուն Պրէպան Մարսէյլի մէջ ։

Մանրամասնութիւններ յաջորդով ։

★

## Գեղունի

28 Գունաւոր նկարներով, ճոխ բովանդակութեամբ մը ծաւալով [illegible], [illegible] ։

ՇՔԵՂ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՄԲ, բացառիկ հրատարակութիւն [illegible]։
Գինը՝ Ֆրանսա 2500 ֆրանք։
Արտասահման 15 տոլար կամ 3 անգլ.։
Դիմել Pères Mekhitaristes, St. Lazare Venise (Italie) :

ԹԱՒՐԻԶԻ առաջնորդարանը կը խնդրէ մեզմէ ծանուցանել թէ Սը. Համասփիւռ Մելիք Յակոբեան կը փնտռուի իր մօրը Խաթուն Մելիք Յակոբեանի կողմէ։ Տեղեկացնել Թաւրիզի (Իրան) Հայոց առաջնորդարանի հասցէով ։



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի օրկանին,

ՀԱՅԱՍՏԱՆԻ Ը. ԹԻՒԸ (հոկտ.)

Ճոխ եւ այլազան բովանդակութեամբ, ՀԱՅԵՐԷՆ ԵՒ ՖՐԱՆՍԵՐԷՆ։

Վարչական հասցէ.— H. Patouyan, 43 rue Richer, Paris :

Հատով կը ծախուին հայ գրատուները՝ Հր. Սամուէլ 51 rue Mr. le Prince, Հ. Փալուեան 43, rue Richer, Մ. Պարամեան 40 rue Richer, լրագրավաճառի կրպակները՝ St. Denis, St. Michel, Petits Carreaux, rue des Fetes, rue Piat, Palikao :



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, rue Damesme - 13

Օր. ԱՐՄԵՆՈՒՀԻ ՏԷՄԻՐԵԱՆ
Պ. ՄԻՇԷԼ ՄԻՍՃԵԱՆ
Նշանուած

Շավիլ Հոկտ. 26 Մարսէյլ

ԳՐԱՒՈՒԱԾ ՕՐ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի մասնաճիւղին պարահանդէսը, կիրակի 21 Դեկտեմբերին։

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի հանդէսը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 14ին։ Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը ։

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
ՊԱՆԷԼՕ ՔԱՇԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ
ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

8 rue Jean Goujonի սրահը, Կիրակի 9 Նոյեմբեր 1947ին, ժամը 15էն կէս գիշեր։
Ի նպաստ թոքախտաւորներուն իր ձեռնարկին։ Գեղարուեստական խնամուած բաժին։
Նուագախումբ Կ. Սարեանի ։
Կը նուագէ Թառիսթ Գարեգին։ Պար.— Քասիօ Քանթոյի զոյգին կողմէ։
Պիւֆէ Մուտք 150 ֆր.

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹԸ
Ցայտնի դիւցազներգութիւնը, շարահիւսեց
Կ. ՍԱՍՈՒՆԻ

350 մեծադիր էջ, ընտիր տպագրութեամբ, գին՝ 500 ֆրանք ։ Կը գտնուի Փարիզի հայ գրավաճառներուն մօտ։ Տպ. Պէյրութ, 1947:

